մանային վէճը պէտք է արդար լուծում մը գտնեն: 4. ՄԱԿի բանակները ամէն ճիգ պէտք է թափեն, որպէսզի եգիպտեւիսրայէլեան սահմանագծին վրայ խաղաղութիւնը պահպանուի:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ տարագիր կառավարութիւն մը պիտի կազմուի նախկին նախարար Տիկին Աննա Քէթլիի նախաձեռնութեամբ: Պիտի աշխատին համոզել ազատ աշխարհի պետութիւնները, որ չճանչնան Քատարի կառավարութիւնը: Ներկայացուցիչներ պիտի ունենան Եւրոպայի բոլոր մայրաքաղաքներուն մէջ:

ԿԻՊՐՈՍԻ մէջ, 19ամեայ յեղափոխականի մը կախաղան հանուելուն դէմ իբր բողոքի ցոյց, գործադուլ կազմակերպուեցաւ: Յեղափոխական շարժման ղեկավարները անգլիական իշխանութեանց առաջարկեցին վերջ տալ կռիւներուն՝ պայմանաւ որ Մակարիոս արքեպիսկոպոս ազատ արձակուի իր աքսորէն եւ Կիպրոս վերադառնալու արտօնութիւն ստանայ:

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ Հելէնա իշխանուհին, որ Քէնթի դքսուհիին եւ Եուկոսլաւիոյ Օլկա իշխանուհիին մայրն է, մեռաւ 75 տարեկան հասակին՝ սրտի տագնապի մը հետեւանքով:

ԻՆԴՈՆԵԶԻՈՅ ամբողջ արշիպեղագոսին մէջ «պատերազմական եւ պաշարման» վիճակ յայտարարուեցաւ: Կառավարութիւնը իր հրաժարականը ներկայացուց:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ փոխ նախագահը, Նիքսըն, որ այժմ Լիբիա կը գտնուի, Թունուզէն վերջ Հռոմ պիտի այցելէ, ուր կը սպասուի շաբաթ օր: Տեսակցութիւններ պիտի ունենայ նախագահ Կրոնքիի, վարչապետ Սէնյիի եւ Արտաքին նախարար Մարթինոյի հետ: Իսկ կիրակի առաւօտ պիտի ընդունուի Պապին կողմէ:

ԶՕՐ. ՏԸ ԿՈԼ կը շարունակէ Մաւրիտանիոյ մէջ սկսած իր շրջապտոյտը:

## ՍԳԱՀԱՆԴԷՍ

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆԻ
ՄԱՀՈՒԱՆ ՔԱՌԱՍՈՒՆՔԻՆ ԱՌԹԻՒ
ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
Մարտ 24ին, Սինեմա Նօայի մէջ

ՍՈՐՊՈՆԻ ՄԵԾ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

Միջազգային Փոքլորի պարի եւ երաժշտութեան փառատօն

ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 17, ժամը 14.30ին
Ի նպաստ Սէն - Իլեռի տիւ Թուվէյի ապաքինարանին:

Տոմսերու գին.— 300, 200, 150 եւ 100 ֆրանք:

### ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Աստուր Թէրզեան (Տրակինեան) իրենց թոռնիկին Հայկ-Ռոժէի ապաքինման առթիւ շնորհիւ Տքթ. Շովէնի ջանքերուն, հազար ֆր. կը նուիրեն Մշակոյթի տան:

(Ստանալ «Յառաջ»էն):





ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ՎԻԷՆԻ ՄԷՋ

Պեսսօ գործարանին հայ վարձակալներու պաշտպան Միութեան ի նպաստ:

Տէսինի Թատերախումբը, կը ներկայացնէ Գրիգոր Վահանի «ԲԱԽՏԻՆ ԱՆԻՒԸ»:

Սէրքլը Կաթոլիկի սրահին մէջ, այս շաբաթ, ժամը 20.30ին: Մուտքը 150 ֆր:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆԻ
ՄԱՀՈՒԱՆ ՔԱՌԱՍՈՒՆՔԻՆ ԱՌԹԻՒ

Այս կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս - Պետրոս եկեղեցին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆԻ

յիշատակին: Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Սարգիս Մինասեան ենթակոմիտէին:

Այս առթիւ կը մասնակցին՝ Խաչակիր Մանուկները:

Կը հրաւիրուին ողբացեալ ընկերոջ յիշատակը յարգողները:

## ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի և շրջաններու խումբերու և ենթակոմիտէներու վարչութիւնները (բացի Նիսի Գէորգ Չաւուշ, Ավինեոնի Մուրատ եւ Կարտանի Նիկոլ - Դուման խումբերու վարչութիւններէն) յառաջիկայ Մարտ 16ին, շաբաթ երեկոյ, ժամը 8.30ին, Ահարոնեան սրահը: Կարեւոր օրակարգ: Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է:



## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան կողմէ, 24 Մարտ, կիրակի ժամը 16էն մինչեւ կէս գիշեր: Սէրքլը Միլիթէրի ընդարձակ սրահը:

Գեղարուեստական ճոխ բաժին, անակնկալներ:

Նուագախումբ՝ ՎԱՐԴԻՎԱՆԵԱՆԻ: Տոմսերու եւ սեղաններու համար դիմել Յ. Պահատրեանի, հեռ. ORN. 37-32, կամ Մ. Գրաճեանի 138 բիւ տը լ'Ապէ կրու, փարիզ (15):

ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ,
ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի
ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ռոստոմ» խումբի, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Շրջ. վարչութեան:

Կը դասախօսէ ընկ. Ա. ՔԷՕՍԷԵԱՆ

Այս երկուշաբթի ժամը 21ին «Ահարոնեան» ակումբին մէջ: (26 բիւ տէ Քոնվալէսան):

Կը հրաւիրուի ազգասէր հայ հասարակութիւնը:

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղ. Միութիւնը կը հրաւիրէ գաղութին եւ շրջանի հայութիւնը իր տարեկան ընդհ. ժողովին, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն, Սալ Սէն Լուի, րիւ Ժէ:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քաֆէ Քոտէի վերնայարկը: Կը խօսի Ճափոն դիւանական Տօքթ. Զաքարադովա, (ֆրանսերէն լեզուով): Նիւթը՝ «Ծայրագոյն Արեւելքի իմաստասիրութիւնն ու բժշկութիւնը»: Բացառաբար դասախօսութիւնը պիտի սկսի ժամը 21ին: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ

Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

ԱՐՈՒԵՍՏԻ ԼՐԱՏՈՒ.— Պարսկահայ ծանօթ պարուհի՝ Օր. Լաուրա Աւետիսեան պիտի մասնակցի շաբաթ ցերեկ ժամը 12.30ին, ֆրանսական հեռապատկերի յայտագրին:

ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Կրընոպլի Եօթնեղբայրեան կոմիտէի նախաձեռնութեամբ, Փետրուար 18ի համաժողովրդային ապստամբութեան 36րդ տարեդարձը պիտի տօնուի այս շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ:

Կը խօսի ընկեր ՍԻՍԱԿ ՍԻՍԼԵԱՆ

Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

Մուտքը ազատ է:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս երեքշաբթի, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պէլվիլի «Ռոստոմ» խումբի ժողովը այս շաբաթ, ժամը 21ին, Փլաս տը Ֆէթի ծանօթ սրճարանը:

ԱՆԻԷՌ ԳՈՒԱ ԲՈԼՈՄԲ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԻԹԱԼԻ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ - Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ժողովը այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

ՍԱՐՍԷԼ - ԱՌՆՈՒՎԻԼ.— Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի ընկերական ընդհանուր ժողովը, այս շաբաթ ժամը 21ին, Սարսէլի ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՓԱՐԻԶ.— Կապ. Խաչի մասնաճիւղին ժողովը այս երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 4ին, Քաֆէ Րեժան:

Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Խիստ կարեւոր օրակարգ:

ՎԱԼԱՆՍ.— Կապ. Խաչի մասնաճիւղին ընդհ. անդամական ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, Հ. Յ. Դ. Ահարոնեան ակումբին մէջ:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան հանդէսի յանձնախումբի եւ վարչութեան ժողովը այս շաբաթ ժամը 17.30ին, Իսիի Խրիմեան վարժարանի սրահը:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կապոյտ Խաչի Շրջ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Կարապետ Յակոբեանէ հինգ հազար ֆր. իրենց աղջկան ամուսնութեան առթիւ:

ՌՈՆԻ - ՍՈՒ-ԲՈՒԱՅԻ ԼՍԱՐԱՆ

Այս Շաբաթ գիշեր, ժամը 21ին, Քաֆէ տիւ Քոմէրսի մէջ: Կը խօսի Պ. ՌՈՒԲԷՆ ԹԱԴԷՈՍԵԱՆ: Նիւթն է՝ Հայուն համբաւը եւ իրական արժէքը տնտեսական ասպարէզին մէջ:

